Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ կենտկոմի
գաղափարական
աշխատանքի
բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՄԱՅԻՍ 10 1963

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78։*



# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՇԱՐԺՈՒՄԸ

*Կոմունիստական շինարարության արդի էտապի գլխավոր բովանդակությունը պարտիայի XXII համագումարի որոշումների, նրա ընդունած ՍՄԿՊ ծրագրի կենսագործման համաժողովրդական պայքարն է։ Մեր երկրի աշխատավոր ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պատմության մեջ առաջինն է կառուցում կոմունիստական հասարակարգ, որը կոչված է իրագործելու մարդկության ամենանվիրական իդեալները՝ Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն և Երջանկություն։*

*Սոցիալիզմի աստիճանական վերաճումը կոմունիզմի, օբյեկտիվ օրինաչափություն է, բայց այդ օրինաչափությունը ավտոմատիկորեն չի կատարվում։ Մարդը և նրա ստեղծագործ աշխատանքը, որը կերտում է ամենաժամանակակից տեխնիկան, այն օգտագործում է աշխատանքի ամենաբարձր ար-*

տադրողականության հասնելու համար, կոմունիզմի ժամանակաշրջանում ստանում է վճռական նշանակություն։

Կոմունիզմ կարելի է կառուցել միայն համառ աշխատանքով, բանվոր դասակարգի, գյուղացիության, ինտելիգենցիայի, սովետական ամբողջ ժողովրդի եռանդուն ջանքերով։ Մեր երկրում, հաղթանակած սոցիալիզմի երկրում, աշխատանքը դարձել է մարդու արժանապատվության գլխավոր չափանիշը, նրա հասարակական պարտքը։ Կենսագործվել է Վ. Ի. Լենինի կանխատեսումն այն մասին, որ կոմունիզմը պետք է լինի միլիոնավոր աշխատավորների կենդանի, պրակտիկ գործը, դառնա նրանց համար սեփական հարազատ գործ։ Այսօր մենք վկա ենք սովետական մարդկանց աշխատանքային մասսայական հերոսության, ավելի արտադրողաբար աշխատելու ձգտման։

Օրեցօր ավելի մեծ թափ է ստանում կոմունիստական աշխատանքի շարժումը, որին ներկայումս մասնակցում են երկրի ավելի քան 23 միլիոն առաջավոր աշխատողներ, տասնյակ հազարավոր կոլեկտիվներ։ Ստեղծվել և հասարակական հիմունքներով հաջողությամբ գործում են աշխատավորների հազարավոր տարբեր ստեղծագործական




կոլեկտիվներ, որտեղ ամենաբազմազան մասնագիտությունների մարդիկ կամավոր կերպով, առանց փոխհատուցման, աշխատում են արտադրության կատարելագործման վրա, աշխատում են հանուն հասարակության բարօրության։ Կոմունիստական շարժումն ընդգրկել է ոչ միայն նյութական արտադրությունը, այլև գիտությունը, ոչ արտադրական ճյուղերը, կենցաղը, կուլտուրան։ Այն մեծ ազդեցություն է գործում սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա։

Ավելի քան 2 հազար ձեռնարկություններ, 38 հազար ցեխեր, տեղամասեր ու ֆերմաներ, 360 հազար բրիգադներ, որոնք միավորում են 4 միլիոն բանվոր, արդեն նվաճել են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչում։ Արտադրական բրիգադների կազմի մեջ չմտնող երկու միլիոն 300 հազար բանվորներ արժանացել են կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման։ Վ. Ի. Գագանովայի հայրենասիրական նախաձեռնությամբ արտադրության 50 հազարից ավելի առաջավորներ անցան այն տեղամասերն ու բրիգադները, որոնք առաջ ետ էին մնում, և օգնեցին նրանց հաղթահարելու ետ մնալը, դուրս գալու առաջավոր ընագծեր։

Կոմունիստական աշխատանքի շարժումը նախապատրաստվել է սովետական հասարակարգի զարգացման ամբողջ ընթացքով։ Այն իր մեջ ընդգրկում է այն ամենը, ինչը ստեղծվել է սովետական իշխանության տարիներին մասսաների ստեղծագործական նախաձեռնության, հերոսական աշխատանքի շնորհիվ։ Միաժամանակ, դա որակապես նոր շարժում է, աշխատանքային մրցության բարձրագույն ձևը, որը համապատասխանում է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի խնդիրներին։ Այդ շարժման հիմքում ընկած է մեր երկրի աշխատավորների մեծ բանակի ջանասեր աշխատանքը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման, նոր հասարակարգի մարդու դաստիարակության համար։

Կոմունիստական աշխատանքի համար մրցության մեջ դաստիարակվում է նոր մարդը, ձևավորվում է նրա գիտակցությունը, մշակվում է ամեն ինչում կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքներին հետևելու անհրաժեշտությունը։ Այդ շարժման մասնակիցների շարքերում լայնորեն զարգանում են կոլեկտիվիզմը, բարեկամությունը, ընկերական փոխադարձ օգնությունը։

Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվներն ու հարվածայինները մրցում են «սովորել, աշխատել և ապրել կոմունիստաբար» լոզունգով, պայքարում են արտադրության վերելքի, աշխատանքի առավելագույն արտադրողականության հասնելու համար, ձգտում են բարձրացնել իրենց տեխնիկական ու կուլտուրական գիտելիքները, ապրելու այնպես, որպեսզի թե՛ արտադրության մեջ, թե՛ կենցաղում հարաբերությունները համապատասխանեն կոմունիստական բարոյականության բարձր պահանջներին։

Վերջերս Մոսկվայում տեղի ունեցած կոմունիստական աշխատանքի շարժման առաջավորների համամիութենական խորհրդակցությունում հանգամանորեն քննարկվեցին այդ շարժման հաջողությունները, վեր հանվեցին բացերը, -դրվատանքի արժանացան սովետական մարդկանց աշխատանքային սխրանքները, նշվեցին նրանց անելիքները։ Առանձնահատուկ ուշադրություն նվիրվեց աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման հարցերին։ Հասնել աշխարհում ամենաբարձր արտադրողականության, նշանակում է ապահովել կոմու-

նիզմի գործի հաղթանակը։ Յոթնամյակի չորս տարում աշխատանքի արտադրողականությունը, կրճատ աշխատանքային օրվա պայմաններում, արդյունաբերության մեջ աճել է 25, շինարարության մեջ՝ 30 տոկոսով։ Բայց, ամբողջությամբ վերցրած, աշխատանքի արտադրողականության ձեռք բերված մակարդակը դեռ անբավարար է, այդ ասպարեզում յոթնամյակի առաջադրանքները թերակատարվում են։

Խորհրդակցությունում նշվեց Մագնիտագորսկի մետալուրգիական կոմբինատի դոմնագործների լավ աշխատանքը, որոնք նվաճել են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվ կոչում, հասել աշխարհում ամենաբարձր աշխատանքի արտադրողականության։ Դոնեցկի «Պրիվոլնյանսկայա—Յուժնայա» ածխահորում ածխի հանույթի համաշխարհային ռեկորդ է սահմանել ընկ. Կովալչուկի ղեկավարած բրիգադը, որը մեկ ամսում տվեց 80.039 տոննա ածուխ։ Նավթի հանույթի ասպարեզում բարձր արդյունքների հասավ Թաթարական ԱՍՍՌ-ի «Ալկեևնեֆտ» նավթահանքային վարչության կոմունիստական աշխատանքի բրիգադը, որի ղեկավարն է Սոցիալիստական աշխատանքի հերոս ընկ. Վալեևը։



Մեր ռեսպուբլիկայում նույնպես ծավալվում է կոմունիստական աշխատանքի շարժումը։ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը, որը էլեկտրապոմպերի գործարանի հետ միատեղ հանդիսանում են 103,5 տոկոս բնագիծը նվաճելու համար մրցության նախաձեռնողներ, պայքարում է կոմունիստական աշխատանքի ձեռնարկության կոչման արժանանալու համար։ Կատարելով իր պարտավորությունը, գործարանի կոլեկտիվը ժամկետից 5 օր շուտ կատարեց համախառն արտադրանքի չորս ամսվա առաջադրանքը։ Ներկայումս կոմունիստական աշխատանքի շարժման մեջ ներգրավված են շուրջ 3.200 բանվորներ, մասնագետներ։ 24-ամյա Գրետա Ստեփանյանը, որը ղեկավարում է № 9 (գեներատորների հավաքման) ցեխի աղջիկների կոմունիստական աշխատանքի բրիգադը, գործարանում առաջիններից մեկն էր, որ արժանացավ այդ բարձր կոչման։ Դա համերաշխ մի կոլեկտիվ է, որը ոչ միայն մշտապես գերակատարում է առաջադրանքները, այլև թողարկում բարձրորակ արտադրանք։ Գործարանում մրցության առաջին շարքերում է Գ. Տիտովի անվան կոմունիստական աշխատանքի № 12 ցեխը, որի անդամները ոչ մի-

այն գերակատարում են պլանները, այլև հանդես գալիս որպես նորի, առաջավորի նախաձեռնողներ։ Նույն ցեխի Ա. Հովհաննիսյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադը այս տարվա սկզբին հանդես եկավ «եկեք աշխատենք առանց վերահսկիչների» նախաձեռնությամբ, այսինքն թողարկվող արտադրանքի որակի համար ամբողջ պատասխանատվությունը վերցնել իրենց վրա, հրաժարվել վերահսկիչների ծառայություններից։ Գործարանի «Էլեկտրամեքենաշինարար» բազմատիրաժ թերթի այս տարվա մարտի 25-ի համարից տեղեկանում ենք, որ Ա. Հովհաննիսյանին նամակով դիմել է Կույբիշևի տրամվայ-տրոլեյբուսի պարկի աշխատող քանամյա Վասիլևան և խորհուրդներ հարցրել աշխատանքի ու կյանքի մասին։ Ա. Հովհաննիսյանը բրիգադի անդամների անունից պատասխանել է նրան։

Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում կոմունիստաբար աշխատողների գործվածքային № 1 ցեխը, որը այդ բարձր կոչման արժանացավ 1962 թվականի վերջին, ընթանում է սոցիալիստական մրցության ավանգարդում։ Այս տարվա առաջին եռամսյակում պլանից դուրս տվեց 50



հազար մետր գործվածքեղեն, բարձր արտադրողականությամբ աշխատեց նաև ապրիլին։

Այս տարվա մարտի 20-ին ագրեգատների նորոգման գործարանի ագրեգատների հավաքման № 1 ցեխի կոլեկտիվին շնորհվեց կոմունիստականի բարձր կոչում (ցեխի պետ՝ Ս. Ղարախշյան, բրիգադիրներ՝ Հ. Գուլումչյան, Մ. Օջախյան, Մ. Մարկոսյան, Կ. Վարդանյան, Հ. Աղատյան, Բ. Մարկոսյան, Հ. Շեխիկյան, Հ. Բանդիկյան, Հ. Մելիքյան, Ա. Պողոսյան, Կ. Մանուկյան, Գ. Իսկանդարյան)։ Կոմունիստաբար աշխատող և ապրող կոլեկտիվն այժմ պայքարում է երկրորդ եռամսյակի պլանը ժամկետից 7 օր շուտ կատարելու համար։

Կոմունիստական աշխատանքի շարժումն այժմ ընդգրկում է սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերը, գյուղի ու քաղաքի աշխատավորների լայն շրջանները։ Այդ շարժումը մեծ վերելք է ապրում։ Սակայն նրա կազմակերպման մեջ կան նաև թերություններ։ Ժողովրդական տնտեսության որոշ ճյուղերում և երկրի շրջաններում կոմունիստական աշխատանքի համար մրցությունը դեռ մասսայական չի դարձել։ Այս տեսակետից մեծ անելիքներ ունեն մեր

ագիտատորները։ Ագիտացիոն-բացատրական աշխատանքը պետք է ի սպաս դրվի կոմունիզմ կառուցող, նյութական բարիքներ ստեղծող մարդուն, ծառայի արտադրության կատարելագործմանը, տեխնիկական առաջադիմությանը, նոր ռեզերվների հայտնաբերմանը և լավագույն փորձի ներդրմանը։

Պարտիական կազմակերպությունները պետք է կարողանան ակտիվորեն ներգործել մարդկանց տրամադրությունների վրա, պաշտպանել նրանց նախաձեռնությունը, քաջալերել նրանց քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը, բարձրացնել կազմակերպվածությունն ու գործարարությունը, հակահարված հասցնել հետամնաց հայացքներ կրողներին, խստորեն վերաբերվել հակահասարակական վարմունքի բոլոր դեպքերին, ժամանակին կանխել բացասական երևույթները, արմատավորել աշխատանքի հասարակական նշանակության խոր ըմբռնողություն և գիտակցական վերաբերմունք դեպի այդ աշխատանքը։

—•—



# ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՄԱՐՏԵՐԸ ՑՆՑՈՒՄ ԵՆ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԱՇԽԱՐՀԸ*

Իրենց հզորությամբ, մեծ կազմակերպվածությամբ աչքի ընկան Անգլիայի երկաթուղայինների և ավտոմոբիլաշինարարների, Լիվորնոյի (Իտալիա) նավաշինարարների գործադուլներն ու ցույցերը։ Աշխատանքից ազատումների դեմ Ճապոնիայի հանքագործների պայքարն անցյալ տարվա վերջին պաշտպանվեց երկրի աշխատավորների ընդհանուր գործադուլով, որը պառլամենտին ստիպեց ընդունել հանքագործների շահերը մասնակիորեն պաշտպանող մի շարք օրենքներ։

Բայց կապիտալիստական երկրների աշխատավորները չեն սահմանափակվում կոնկրետ տնտեսական պահանջներ ներկայացնելով։ Ավելի ու ավելի մասսայական են դառնում մոնոպոլիաների լիիշխանությունը սանձելու, էկոնոմիկայի նկատմամբ դեմոկրատական վերահսկողություն հաստատելու

* Սկիզբը տես «Ագիտատորի բլոկնոտ»-ի 9-րդ համարում։

և ազգայնացնելու լոզունգները։ Անցյալ տարվա ամռանը Իտալիայի 1.250 հազար մետաղագործներ հաստատակամորեն հայտարարեցին, որ անհրաժեշտ է ընդլայնել արհմիությունների իրավունքները, նրանց հնարավորություն տալով աշխատանքային բազմակողմանի համաձայնագրեր կնքելու յուրաքանչյուր ձեռնարկությունում։ Սկզբում մոնոպոլիաները կտրականապես մերժեցին այդ պահանջը, փոխարենն առաջարկելով իրենց կողմից որոշ զիջումներ։ Սակայն բանվորները չհամաձայնեցին։ Ութամսյա պայքարից հետո, որի գագաթնակետն էր վեց միլիոն աշխատավորների 1963 թվականի փետրվարի ընդհանուր գործադուլը, մոնոպոլիաներն ստիպված եղան նահանջել և բավարարել մետաղագործների բոլոր հիմնական պահանջները։

Վերջին ժամանակներս դասակարգային մարտերում պրոլետարիատը նորից հաստատեց, որ ինքը դեմոկրատիայի համար մղվող պայքարի առաջատար ուժն է։ Ճապոնիայում երեք անգամ վիժեցվեցին աշխատավորների քաղաքական գործունեության, արհմիությունների և գործադուլի իրավունքի դեմ ուղղված ռեակցիոն օրենքն ընդունելու կառավարության փորձերը։ Անգլիայում, Իտալիայում և այլ երկրներում աշխատավորները բազմիցս համերաշխ ու կազմակերպված ձևով հակահարված են տվել ֆաշիստական բաշիբոզուկների ոտնձգություններին։



Շահագործողների դեմ բանվոր դասակարգի պայքարն ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում։ Վերջին հինգ տարում գործադուլավորների թիվն այստեղ կազմել է տարեկան 10—20 միլիոն մարդ։ Չնայած այդ աշխարհամասերի առանձին երկրներում պայմանների բազմազանությանը, սոցիալական ճնշման դեմ աշխատավորների ելույթներն անխզելիորեն կապված են համաշխարհային իմպերիալիզմից և առաջին հերթին ամերիկյան իմպերիալիզմից տնտեսական ու քաղաքական լիակատար անկախություն ձեռք բերելու պայքարի հետ։

Ժողովրդական մասսաների շարժումն առավել մեծ թափ է ստացել Լատինական Ամերիկայում։ Այդ շարժման վրա իր օրինակով հսկայական ռևոլյուցիոն ներգործություն է ունենում հերոսական Կուբան, որն ազատվեց իմպերիալիստների ճանկերից, նվաճեց իսկական ազատություն ու անկախություն և կառուցում է նոր կյանք։

Բրազիլիայում և Արգենտինայում անցյալ տարի գործադուլ արեցին բանվորների ու ծառայողների գրեթե բոլոր կատեգորիաները։ Բրազիլիայի ծովայինների ընդհանուր գործադուլը տասն օրով խափանեց երկրի ամբողջ առևտրական նավատորմի աշխատանքը։ Արգենտինայի Կորդոբա քաղաքում բանվորները գրավեցին ավտոմոբիլի այն գործարանը, որը տերերը մտադիր էին փակել, և չորս օր մարտեր մղեցին զորքի ու ոստիկանության դեմ։ Անցյալ տարվա երկրորդ կեսին գործադուլային շարժումն ընդգրկեց Էկվադորը։ Տարվա վերջին խոշոր գործադուլներ բռնկեցին Պերուում և Ուրուգվայում։ Վենեսուելայում բազմիցս գործադուլ են հայտարարել նավթագործները, Չիլիում՝ պղնձահանքերի և սելիտրայի հանքերի բանվորները։ Երկշաբաթյա գործադուլից հետո Մեքսիկայի 55 հազար տեքստիլագործների հաջողվեց ձեռնարկատերերին ստիպել բավարարելու իրենց պահանջները։

Լատինական Ամերիկայի երկրներում շարունակ աճում է գյուղացիական շարժումը։ Բրազիլիայում, Վենեսուելայում, Չիլիում, Էկվադորում և այլ երկրներում գյուղացիներն սկսել են գրավել կալվածատերերի հողերը։ Գրավված հողերը տերերին վերադարձնելու



իշխանությունների փորձերը վերածվել են գյուղացիության ու զորքերի միջև զինված ընդհարումների։ Կոլումբիայում, Վենեսուելայում, Պարագվայում, Գվատեմալայում ակտիվորեն գործում են պարտիզանական ջոկատները։

Ժողովրդական զանգվածների ծայրահեղ աղքատության և ռազմա-ոստիկանական ռեժիմների պայմաններում Լատինական Ամերիկայում տնտեսական ու քաղաքական պայքարի սահմանը գրեթե լիովին ջնջվում է։ Ընդհանուր գործադուլներն այստեղ ավելի հաճախ են լինում, քան որևէ այլ տեղ և, որպես կանոն, ուղղված են իմպերիալիստական շահագործման ամբողջ սիստեմի, լատիֆունդիզմի, քաղաքական ու ռազմական տեռորի դեմ։ Այդպիսիք էին 1962 թվականին Բրազիլիայում, Արգենտինայում, Չիլիում, Ուրուգվայում տեղի ունեցած ընդհանուր գործադուլները։ Դրանցից շատերի ժամանակ զինված ընդհարումներ տեղի ունեցան զորքերի և աշխատավորների միջև։

Աֆրիկայի պրոլետարիատի վերջին ժամանակաշրջանի խոշորագույն ելույթն էր Հյուսիսային Ռոդեզիայի հանքագործների գործադուլը։ Անցյալ տարվա մայիսին պղնձահանքերի 30 հազար բանվորներ

գործադուլ արեցին ավելի քան երեք շաբաթ, պահանջելով բարձրացնել աշխատավարձը, բարելավել աշխատանքի պայմանները և դադարեցնել խտրականությունն աֆրիկացի բանվորների նկատմամբ։ Առաջին անգամ գործողությունների միասնություն ապահովվեց եվրոպացի բանվորների հետ։

Հուլիսին պայքարը վերսկսվեց և ընկերությունները, մեծ վնասներ կրելով, ստիպված եղան բավարարել հանքագործների պահանջների զգալի մասը։ Անցյալ տարվա վերջին և այս տարվա սկզբին Հյուսիսային Ռոդեզիայում բռնկեցին նոր գործադուլներ։ Բանվոր դասակարգի խոշոր ելույթներ տեղի ունեցան Մարոկկոյում, Նիգերիայում, Քենիայում և աֆրիկյան այլ երկրներում։

Ասիայի պրոլետարիատի դասակարգային պայքարում կարևոր իրադարձություն էր մալայան երկաթուղայինների գործադուլը, որը երեք շաբաթով խափանեց տրանսպորտի աշխատանքը։ Այդ գործադուլը պաշտպանեցին աշխատավորների այլ ջոկատներ, այդ թվում կաուչուկի պլանտացիաների երեք հարյուր հազար բանվորներ, որոնք հայտարարեցին հա-



մերաշխության միօրյա գործադուլ։ Նրանք ընկճվեցին և հաղթանակ տարան։ Կառավարությունն ստիպված եղավ զիջումներ անելու։



Ավելի ու ավելի լայն ծավալ է ստանում Թուրքիայի աշխատավորների պայքարը։ Նրանք պահանջում են ոչ միայն բարելավել իրենց նյութական վիճակը, այլ առաջին հերթին լիովին ճանաչել արհմիությունների ու գործադուլի իրավունքը։ Պատկերը նույնն է Լիբանանում, Իսրայելում, Պակիստանում, Ֆիլիպիններում և այլուր։

Այժմ կապիտալիստական երկրների աշխատավորների դասակարգային կռիվները ծավալվում են ավելի բարենպաստ պայմաններում, քան անցյալում։ Մեծացել է բանվոր դասակարգի թվական կազմը, նա ավելի է հասունացել քաղաքականապես և ավելի է կազմակերպված դարձել։ Ներկայումս կապիտալի երկրների արհմիությունները միավորում են ավելի քան 90 միլիոն աշխատավորների։ Ավելի ու ավելի նկատելի է դարձել գործողությունների միասնության նրանց ձգտումը։ Ուժեղացել է պրոլետարիատի ազդեցությունն աշխատավորների մյուս խավերի վրա։

Ամենուրեք որպես ռեոլյուցիոն բանվո-

րական շարժման մարտական ավանգարդ և կազմակերպող ուժ հանդես են գալիս կոմունիստական պարտիաները։ Ներկայումս դրանք գործում են ոչ սոցիալիստական գրեթե 80 երկրներում, իրենց շարքերում միավորելով ավելի քան հինգ միլիոն մարդ։

Նրանց հեղինակությունը շարունակ աճում է։ Եվ դա հասկանալի է. մարքսիստական-լենինյան պարտիաները անձնվիրաբար պաշտպանում են ժողովրդի շահերը, հետևողականորեն արտահայտում են նրա իդեալներն ու հույսերը։

Դասակարգային պայքարի այժմյան վերելքը տեղի է ունենում խաղաղ գոյակցության, կայուն խաղաղության համար ակտիվ պայքարի պայմաններում։ Այդ պայմաններում, ասված է կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի խորհրդակցության հայտարարության մեջ, բարենպաստ հնարավորություններ են ստեղծվում կապիտալիստական երկրներում դասակարգային պայքարի ծավալման, գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման համար։ Իր հերթին ռևոլյուցիոն դասակարգային



և ազգային-ազատագրական պայքարի հաջողությունները նպաստում են խաղաղ գոյակցության ամրապնդմանը։

Պայքարը խաղաղության պահպանման և ամրապնդման համար՝ աշխատավորների մասսայական գործողությունների կարևորագույն ուղղություններից մեկն է։ Դա հատկապես վառ կերպով դրսևորվեց ամերիկյան իմպերիալիզմի կողմից անցյալ տարվա աշնանը Կարաիբյան ծովի շրջանում ստեղծված ճգնաժամի օրերին։ Այն ժամանակ զայրագին բողոքների փոթորիկ տարածվեց բոլոր մայր ցամաքներում ու երկրներում։ Միայն Իտալիայում՝ բողոքի միտինգներին մասնակցեցին 2 միլիոն աշխատավորներ։ Ամբողջ աշխարհի աշխատավոր մարդիկ սովետական կառավարությանը շնորհակալ են նրա վճռականության և իմաստուն գործողությունների համար, որոնց շնորհիվ վիժեցվեցին մարդկությանը ջերմա-միջուկային պատերազմի հորձանուտի մեջ գցելու ԱՄՆ-ի իմպերիալիստների հանցավոր մտադրությունները։ Կուբայի հետ համերաշխության լատինաամերիկյան կոնգրեսը, որը վերջերս տեղի ունեցավ Բրազիլիայում, նորից ցուցադրեց միլիոնավոր աշխատավորների վճռակա-

նությունը՝ խաղաղությունը և ժողովուրդների ազգային սուվերենությունը ամերիկյան իմպերիալիզմի ոտնձգություններից պաշտպանելու համար։

Բոլոր երկրներում ծավալվում է շարժումը միջուկային զենքի արգելման, ընդհանուր և լրիվ զինաթափման համար։ Ճապոնիայում, Անգլիայում, Իտալիայում, Հունաստանում և այլ երկրներում մասսայական ելույթներ են տեղի ունենում ուրիշի տերիտորիաներում տեղաբաշխված ամերիկյան բազաների դեմ։

Խաղաղությունը պաշտպանելու և կապիտալի դեմ պրոլետարիատի դասակարգային մարտերն ավելի ուժեղացնելու համար հնարավորություն է ստեղծվել միայն համաշխարհային ասպարեզում ուժերի տեղաբաշխման արմատական փոփոխման, Սովետական Միության գլխավորությամբ համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծման, ազգային-ազատագրական ռևոլյուցիաների ճիանալի հաղթանակների շնորհիվ։ Սոցիալիստական լագերը, կապիտալիստական սիստեմի հետ տնտեսական մրցության մեջ ցուցադրելով իր առավելությունը, դրանով իսկ խթանում է աշխատավորների դասակարգային պայ-



քարը կապիտալի երկրներում։ Միևնույն ժամանակ ՍՍՌՄ-ի, սոցիալիզմի բոլոր երկրների հզորության աճը զգաստացուցիչ ներգործություն է ունենում իմպերիալիստների վրա, զսպում է նրանց փորձերը՝ պատերազմն օգտագործելու որպես հակասությունների փակուղուց դուրս գալու, ռևոլյուցիոն բանվորական և ազգային-ազատագրական շարժումը ջախջախելու միջոց։ «Դասակարգային պայքար, այլ ոչ թե բանվոր դասակարգի և նրա կազմակերպությունների հաշտեցում շահագործողների հետ՝ ահա պրոլետարական շարժման մեծագույն սկզբունքը, նրա նոր հաղթանակների ամենագլխավոր պայմանը»: Այս լոզունգը, որի մասին Ն. Ս. Խրուշչովը հիշեցրեց Արհմիությունների հինգերորդ համաշխարհային կոնգրեսի պատգամավորներին, եղել է և մնում է որպես ռևոլյուցիոն բանվորական շարժման առաջին պատվիրանը։

ՅՈՒ. ԲԱՐԿՈ

ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի
համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային
հարաբերությունների ինստիտուտի գիտական
աշխատակից

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱՂՔԱՏԱՑՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## (Թվեր և փաստեր)

Կապիտալիզմը ժողովուրդներին միշտ պատճառել և այժմ էլ պատճառում է անթիվ ու անհաշիվ տառապանքներ: Այդ տառապանքներից է աշխատավորների մշտական աղքատությունը, որը կապիտալիզմի անբաժանելի ուղեկիցն է: Ներկայումս կապիտալիստական երկրներում և հատկապես ԱՄՆ-ում, աշխատավորները ենթարկվում են գիշատիչ շահագործման, որի պատճառով նրանք գտնվում են կարիքի և թշվառության մեջ: Ահա տեղեկություններ այդ մասին:

*Կոնգրեսին գրած այս տարվա հունվարյան ուղերձում Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Ջ. Քենեդիի խոստովանությամբ ներկայումս ԱՄՆ-ում 32 միլիոն մարդ ապրում է աղքատության մեջ: Դրա հետևանքով հինգերորդ դասարանում սովորող յուրաքանչյուր տասը աշակերտից նույնիսկ չորսը չի կարողանում միջնակարգ կրթություն ստանալ:*

*Նույն ուղերձում պրեզիդենտ Ջ. Քենեդին գրում է, որ մեկ միլիոն երիտասարդ ամերիկացիներ ոչ սովորում և ոչ էլ աշխատում են:*



*Վերջերս ի լուր աշխարհի Ջոն Քեննեդին հայտարարեց, որ ԱՄՆ-ում ամեն օր 17 միլիոն մարդ սոված է քնում: Ի լրումն պրեզիդենտի, «Լեյբորս էկոնոմիկ ռևյու» ամսագիրը հաղորդում է, որ ամերիկյան աշխատավորներից մոտ 8 միլիոն մարդ իր գոյությունը պահպանում է ողորմությամբ, 40 միլիոն մարդ ապրում է կամ աղքատության եզրին կամ աղքատության մեջ:*

*Վերջերս ԱՄՆ-ի Կոննեկտիկուտի նահանգի Միդֆիլդ բնակավայրում հայտնաբերվել է ստրկական աշխատանք: Ֆերմեր Դեվիդ Շակնեյը օգտագործելով գործազուրկ, մասնագիտությամբ ավտոմեքենավար Լուիս Օրոսի նյութական ծանր վիճակը, նրան և նրա ընտանիքի անդամներին, թվով 7 հոգի, ամիսներով առանց աշխատավարձի աշխատացրել է արշալույսից մինչև վերջալույս և փոխարենը տվել է միայն այնքան ուտելիք, որ նրանք չմեռնեն:*

*Ստույգ տեղեկություններ կան այն մասին, որ միջին ամերիկացին հարկերը վճարելու համար մոտ 5 ամիս ձրիաբար աշխատում է:*

*Ամերիկյան ընտանիքի եկամուտը, հենց բուրժուական տնտեսագետների հաշվումներով, միջին հաշվով ուղղակի և անուղղակի հարկերի գանձման պատճառով պակասում է 30 տոկոսով:*

Արդյունաբերության մեջ դժբախտ դեպքերի քանակով ԱՄՆ-ը ամբողջ աշխարհում բռնում է առաջին տեղը։ ԱՄՆ-ում ամեն տարի աշխատանքի ժամանակ սպանվում է 14 հազար բանվոր և 2 միլիոն բանվորներ էլ խեղանդամ են դառնում։

Ամեն տարի ԱՄՆ-ում քայքայվում է 30 հազար ֆերմերական տնտեսություն։ Միլիոնավոր գյուղատնտեսական բանվորներ թափառում են նահանգից-նահանգ՝ աշխատանք գտնելու հույսով։

Հանքագործների շատ ընտանիքներ ԱՄՆ-ում սոված օրեր են անցկացնում։ Օրինակ, Քենտուկիի նահանգի Հազարդնի հանքագործները նույնիսկ դժվարանում են իրենց զավակներին օրական մեկ անգամ կերակրել։

Սենատոր Հեմֆրին ասել է, որ ԱՄՆ-ում տարեկան 200 հազար մարդիկ մեռնում են միայն նրա համար, որ նրանք դրամական միջոցներ չունեն բժիշկներին վճարելու և դեղորայք գնելու համար։

Վերջերս ԱՄՆ-ի լուսավորության վարչությունը հաղորդել է, որ 1962—1963 ուսումնական տարում երկրի պետական դպրոցներում կպակասի 121.200 դասասենյակ։ Մեկ միլիոն 700 հազար երեխաներ ստիպված կլինեն հաճախել այնպիսի դպրոցներ, որոնք



տեղավորված են գետնախորշերում, խարխլված ու կիսաքանդ շենքերում։

Ներկայումս, 1953 թվականի համեմատությամբ, ԱՄՆ-ում 2 անգամ ավելացել է գործազուրկների թիվը։ Միայն անցյալ տարի պաշտոնապես երկրում գործազուրկների թիվը հաշվվում էր 4 միլիոն մարդ կամ բանվորական ուժի 5,6 տոկոսը, իսկ ընդհանուր առմամբ 14 միլիոն ամերիկացիներ որոշ ժամանակաշրջանում աշխատանք չեն ունեցել։

Բնակարանային սարսափելի վիճակի մեջ են գտնվում Իսպանիայի աշխատավորները։ 1.067,452 աշխատավորական ընտանիքներ չունեն բնակարաններ և իրենց գոյությունը քարշ են տալիս գետնահյուղերում, քարանձավներում։

Տայվանում 1962 թվականին կատարվել է 98.500 հանցագործություն, որը 4 անգամ ավելի է, քան 1950 թվականին։ Հանցագործությունների աճի գլխավոր պատճառը, ինչպես նշում են Տայվանի թերթերը, հանդիսանում են աղքատությունը, գործազրկությունը և «ամերիկյան ապրելակերպի» ազդեցությունը։

Երիտասարդության շրջանում տիրող գործազրկությունը մեծ տագնապ է առաջացրել Անգլիայում։ Անցյալ ուսումնական տարում դպրոցներն ավարտած 140 հազար անգլիացի պատանիներ ու աղջիկներ աշխատանք են փնտրում։

Վերջին ժամանակներս Արգենտինայում բարձրացվել է էլեկտրականության գինը 30 տոկոսով, ավտոտրանսպորտինը՝ 21, երկաթուղային տրանսպորտինը՝ 35 տոկոսով։

Անցյալ տարի Հնդկաստանում ծաղկի համաճարակից մահացան 13 հազար մարդ։

Հարավկորեական «Կորիան րիպաբլիկ» թերթը հաղորդում է, որ այժմ Հարավային Կորեայում շուրջ 5 միլիոն մարդ բնակարան չունի։

Ավստրիայում գնալով աճում է գործազրկությունը։ Արդեն գրանցված են մոտ 200 հազար գործազուրկ։

Այժմ Ճապոնիայում 1,5 միլիոն մարդ տառապում է հոգեկան տարբեր հիվանդություններով։ Այդ հիվանդների կեսից ավելին կլինիկական բուժման խիստ կարիք ունեն։ Սակայն ոչ բոլորը կարող են ընկնել հիվանդանոց, որովհետև բուժումը բավականին թանկ է։

Բուենոս-Այրեսի, ինչպես նաև արգենտինական այլ քաղաքների արվարձաններում աղքատության, բնակարանային ծանր պայմանների մեջ են ապրում հարյուր հազարավոր բանվորներ, մանր ծառայողներ և արհեստավորներ։ Նրանցից շատ շատերը վաղուց դրկված են աշխատանքից։



Միայն Բուենոս-Այրեսի ծայրամասի «աղքատության ավաններում» ապրում է շուրջ 200 հազար մարդ։ Այդ ավաններում երեխաների մեծ մասը հիվանդ է թոքախտով։

Տարեցտարի Թուրքիայում աճում է հողազուրկ գյուղացիների թիվը։ Վերջերս Թուրքիայի հարավային շրջանների մոտ 2000 գյուղացիներ ցույց կազմակերպեցին՝ պահանջելով անցկացնել հողային ռեֆորմ։

Գաղութարարների վարած քաղաքականության հետևանքով Աֆրիկայի ամբողջ բնակչության 80 տոկոսը անգրագետ է մնացել։

Յուրաքանչյուր տասներկուերորդ աշխատունակ կանադացի զրկված է աշխատանքից։ Այժմ Կանադայում կա 545.000 գործազուրկ, որը կազմում է երկրի ամբողջ բանվորական ուժի 8,4 տոկոսը։

Դեռևս 1948 թվականին Տոկիոյի աղքատ արվարձաններում բնակվող շուրջ 5000 մայրեր որոշեցին ստեղծել մանկապարտեզ։ Այդ նպատակի համար նրանք սկսեցին զբաղվել լուցկու տուփերի վաճառքով։ Դժվար է պատկերացնել, թե որքան ուժ ու համառություն էր պետք անհրաժեշտ միջոցները հավաքելու համար։ Բայց երազանքը իրականացվեց։ Վերջապես ստեղծվել է մանկապարտեզը, որտեղ ընդգրկված են 130 երեխա։ Մանկապարտեզ ընդունում

են այն երեխաներին, որոնց ծնողները աշխատանք չունեն։

Ծանր աղքատության մեջ են ապրում Կիպրոսի գյուղացիները։ Միայն վերջին 5 տարվա ընթացքում Կիպրոսից հեռացել են 45.000 բնակիչներ այլ երկրներում հաց և աշխատանք ճարելու նպատակով։

Լատինական Ամերիկայում սովից, ծանր հիվանդություններից ու վաղաժամ ծերությունից յուրաքանչյուր մեկ րոպեում մահանում են 4 մարդ, մեկ օրում 5.500 մարդ, մեկ տարում՝ 2 միլիոն մարդ, 5 տարում՝ 10 միլիոն մարդ։ Այդ նույն ժամանակ Լատինական Ամերիկայից ԱՄՆ-ը յուրաքանչյուր մեկ րոպեում շահույթ է ստանում 4 հազար դոլար, մեկ օրում՝ 5 միլիոն դոլար, մեկ տարում՝ 2 միլիարդ դոլար, 5 տարում՝ 10 միլիարդ դոլար։

Գործազրկությունը մեծ չափերի է հասել Հունաստանում։ 863.600 մարդ այժմ գործազուրկ են, որոնք կազմում են երկրի աշխատունակ բնակչության մեկ քառորդը։

Գործազուրկ և սոված մարդիկ հեղեղել են Ֆիլիպինների մայրաքաղաքի փողոցները։ Կառավարության խոստումը՝ աշխատանք տալ 800 հազար լրիվ և մեկ միլիոն մասնակի գործազուրկներին, մնացել է անկատար։



# ԵՐԵԽԱՅԻ ԼԵԶՎԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՄԱՍԻՆ

— Կարինկա, դե՛ բավական է ամբողջ ժամանակ ինձ մոտ լինես։ Վազ արի ինձնից, մի քիչ էլ գնա պապան...

Երիտասարդ մայրը, վատ տիրապետելով հայոց լեզվին, փոքրիկ աղջկան այսպիսի ձևով հաղորդեց իր միտքը։

Մենք հարց ենք տալիս մորը. նախ՝ ինչո՞ւ «Կարինկա», չէ՞ որ ձեր աղջկա անունը Կարինե է։ «Վազ արի ինձնից» դարձվածքը ոչ մի ընդհանուր բան չունի գրական լեզվի հետ։ Այնուհետև, ինչո՞ւ ասել «գնա պապան», այլ ոչ թե «գնա պապայի մոտ»։

Մանկապարտեզում դաստիարակչուհին հաճախ էր սիրում ասել. «Կարա վեր ընկիր տեղդ, չարություն մի արա՛, հոգիս հանեցիր»։ Այս բոլորի հետևանքը եղավ այն, որ երբ Կարինեն դպրոց հաճախեց, նրա լեզուն արդեն աղավաղված էր։

Դպրոցում նրա հետ միևնույն նստարա-

նին էր նստում Արմենչիկը՝ մայրաքաղաքի գիտաշխատողներից մեկի տղան։ Նա ընդհանուր առմամբ ճիշտ էր խոսում, բայց խոսում էր փաղաքշական լեզվով։ Դա նրա մեջ պատվաստել էին ծնողները։ Արմենչիկը սովորել էր այն բանին, որ ինքը «գլխիկ», «տոտիկներ», «թաթիկներ» ու «աչիկներ» ունի, որ «ձվիկ» է ուտում, խմում է «կաթիկ», իսկ երեկոյան նրան անհրաժեշտ է «քնիկ»։

Մինչև վեց տարեկան հասակը, երեխան ապրում էր ջերմոցային պայմաններում, պաշտպանված, անջրպետված դրսի, ինչպես ասում են, փողոցի լեզվից։ Բայց մի օր, Արմենի ծնողները հանկարծ հիշեցին, որ երեխան շուտով դպրոց է հաճախելու, մինչդեռ, խոսում է երեք տարեկանի լեզվով։ Եվ նրանք նոր միայն որոշեցին «ուժեղ թափ» հաղորդել նրա լեզվի զարգացմանը։ Այնինչ ծնողները երեխայի լեզվական կուլտուրայի մասին պետք է մտածեն այն ժամանակից, երբ սկսվում է նրա առաջին թոթովանքը, այսինքն՝ վաղ մանկությունից։

Պետք է լավ հիշել, որ յուրաքանչյուր ծնող երեխայի բանավոր խոսքի զարգացման առաջին ուսուցիչն է։ Ծնողի լեզվի կենդանի օրինակով երեխան հաղորդակից



դառնում մայրենի լեզվի կուլտուրային, նրա հարստություններին։ Երեխայի մեջ լեզվական բարձր կուլտուրա զարգացնելու կարևոր նախապայմանն այն է, որ ծնողները, առաջին հերթին իրենք ճիշտ խոսեն, և ապա նույնը պահանջեն երեխայից։

Լավ է, երբ ծնողը հետևողական աշխատանք է կատարում երեխայի լեզուն հարստացնելու և հղկելու ուղղությամբ։ Ահա մի օրինակ. երկրորդ դասարանցի Սուրիկի հայրը դասերից հետո լրացուցիչ պարապմունքներ էր անցկացնում տղայի հետ։ Իսկ ինչպե՞ս էր հայրը օգնում տղային։ Տղան ընթերցում էր Խնկո-Ապոր, Թումանյանի և Աղայանի մանկական ստեղծագործությունները և հետո կարդացածը վերապատմում։

Հայրը ուշադրությամբ հետևում էր, թե Սուրիկը ինչպես է կազմում նախադասությունները, արդյոք դրանք ճի՞շտ են, թե ոչ։ Երբ տղան ոչ ճիշտ նախադասություններ կամ բառեր էր գործածում, հայրը ընդհատելով, ասում էր.

— Հապա՛ մտածիր, ուրիշ ինչպես կարելի է ճիշտ ասել այդ բառը, նախադասությունը։

Եթե տղան դժվարանում էր, հայրը պահանջում էր գրքի այդ հատվածը կրկին

կարդալ: Պարբերությունը ուշադիր կարդալուց հետո, երեխան ինքն էր գտնում իր սխալը, ուրախանում դրա համար: Սուրիկի ծնողները դրանով չեն սահմանափակվում: Նրանք երեխային միշտ էլ պահում են այսպես կոչված «խոսակցական հսկողության» տակ, հետևում, որ խոսի առանց շտապելու, բառերն արտասանի պարզ ձևով:

Լեզուն մարդկանց հաղորդակցության միջոց է: Լեզվի միջոցով երեխան շփվում է արտաքին աշխարհի հետ: Այդ առումով էլ շատ կարևոր է, որ նրա խոսքը լինի կապակցված և ունենա ներքին տրամաբանական կապ: Այդպիսի խոսքը երբեք ճապաղ ու ձգձգված չի լինի, այն միաժամանակ կնպաստի երեխայի լեզվական կուլտուրայի բարձրացմանը: Դրա համար էլ ծնողները, երեխային վաղ մանկությունից պետք է օգնեն կապակցված արտահայտելու իր մտքերը:

Այդ տեսակետից ուսանելի է Լենինական քաղաքի բնակիչ Արտավազդ Գրիգորյանի փորձը: Նա արջուկը դնելով սեղանին, իր հինգ տարեկան երեխայից պահանջում է նայել նրան, մի որևէ բան մտածել և հետո այդ մասին պատմել: Տղան իր մտածածը այսպես է պատմում.



— Արջուկը խաղալիք է, այն փափուկ է:

Երբ դժվարանում է շարունակել, հայրը հարցնում է՝— Էլ ի՞նչ կարող ես պատմել արջուկի մասին:

— Որ նա չի ուտում, չի խմում, կենդանի չէ,— շարունակում է երեխան:

Սա մի առաջընթաց քայլ է երեխայի մտածողության, նրա կապակցված ու տրամաբանորեն խոսելու գործում:

Երեխայի լեզվի կուլտուրայի բարձրացմանը մեծապես նպաստում է քերականության ուսումնասիրությունը: Քերականական կանոններում տրված են լեզվի զարգացման օրինաչափությունները, ուղղագրության և ուղղախոսության պահանջները: Սակայն քերականական սահմանումները գիտենալը ինքնանպատակ չէ, անհրաժեշտ է այն ճիշտ և հմտորեն կիրառել կյանքում: Եվ այդ հարցում մեծ են ծնողների անելիքները: Նրանք նախ պետք է հետևեն, որ երեխան պարտաճանաչ կերպով կատարի մայրենի լեզվի գրավոր հանձնարարությունները:

Լեզվի կուլտուրային ներկայացվող կարևոր պահանջներից է նաև լեզվի մաքրությունը: Այս ուղղությամբ ծնողների կողմից կատարվող աշխատանքը պետք է ուղղված լինի երկու հիմնական թերությունների

բարբառախոսության և օտարաբանության դեմ:

Հայտնի է, որ հայոց լեզուն բարբառներով հարուստ լեզու է, և երեխաները հաճախ ընդօրինակում են իրենց ծնողների բարբառային խոսակցությանը: Դրանից խուսափելու համար, նախ ընտանիքում պետք է ստեղծվի ընդհանուր տրամադրություն՝ ուղղված բարբառայնության դեմ: Այդ նպատակին հասնելու համար չափազանց կարևոր պայման է երեխայի բառապաշարի հարստացումը գրական բառերով, հատկապես այն բառերով, որոնք պետք է փոխարինեն բարբառային համարժեքներին:

Լոռվա բարբառով խոսող երեխան, օրինակ, ասում է «չափուղ էս էթմ, մխելի հանգիստ քնա, թե չէ ջիլիզ կհոգնեմ»: Եթե «չափուղ» «մխելի», «ջիլիզ» և այլ բարբառային բառերի գրական համարժեքը երեխային սովորեցնել, ապա նա կհրաժարվի առաջիններից: Այդ գործում մեծ նշանակություն ունի նաև գեղարվեստական գրականության ընթերցումը: Գեղարվեստական գրականության լավագույն նմուշները ոչ միայն ունեն ճանաչողական նշանակություն, այլև բովանդակում են մեր լեզվի հարուստ բառագան-



ձը, ոճերն ու դարձվածքները, թևավոր ու պատկերավոր խոսքերը:

Լեզվի մաքրության հարցի մյուս կողմը, ինչպես նշեցինք, օտարամուտ բառերի անտեղի գործածության դեմ պայքարն է: Բանն այն է, որ ամեն մի օտար բառի գործածություն պետք է բխի անհրաժեշտությունից: Իսկ եթե համապատասխան իմաստ արտահայտող բառը տվյալ լեզուն ունի, ինքնին վերանում է օտար բառը գործածելու անհրաժեշտությունը:

Առանձին ծնողներ երբեմն բռնազբոսիկ կերպով մեր լեզվի մեջ են խցկում օտար բառերը: Օրինակ, ասում են «Պետկա, գնա տրոտուարի վրի կիոսկից մի գազեթ վերցրու»:

Կարիք կա՞ արդյոք բացատրել, որ դա մեր լեզվի նկատմամբ պարզապես ծաղրախաղ է: Ինչո՞ւ մայթին ասել տրոտուար, կրպակին՝ կիոսկ, լրագրին՝ գազեթ:

Ինչու, հարցնում ենք մենք: Չէ՞ որ մեր լեզվում ունենք այդ բառերի համարժեքները:

Լեզվական կուլտուրայի ամենատարածված թերություններից է, երբ երեխաները արհեստական, ինքնակամ ձևով հապավում են այս կամ այն բառը և ստեղծում մի ինչ-

որ նոր բառ, արտահայտություն: Նրանք երբեմն ամենապարզ բառը ճիշտ չեն գործածում, կրճատում և աղավաղում են։ Օրինակ, թվաբանությունը նրանց մոտ դառնում է «թվար», աշխարհագրությունը՝ «աշխարհ», բնագիտությունը՝ «բնագ» և այլն։

Ծնողները, որոնք օր-ավուր հարստացնում են իրենց լեզվական և մյուս գիտելիքները, ի վիճակի են հետևելու երեխայի ուղղախոսությանը և ուղղագրությանը։ Այդ հարցում նրանց մեծ օգնություն կարող է ցույց տալ դպրոցը։ Ծնողները պետք է սերտ կապ պահպանեն մանկավարժների և մասնավորապես մայրենի լեզվի ուսուցչի հետ, խորհրդակցեն նրանց հետ, համատեղ միջոցներ մշակեն երեխաների լեզվական թերությունները վերացնելու համար։

Պետք է լավ հիշել, որ երեխայի լեզվի բարձր կուլտուրան նրա ճիշտ դաստիարակության առաջնահերթ հարցերից է։ Որքան ավելի հարուստ է երեխայի բառապաշարը, այնքան ավելի հաջողությամբ կարող է նա տիրապետել գիտելիքներին։

Լեզուն մարդկային կուլտուրայի հետ հաղորդակից դառնալու հզոր զենք է։ Այն պետք է պահել անաղարտ և անբիծ։

Լ. ԿԱՆՑՅԱՆ



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Կոմունիստական աշխատանքի շարժումը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կոմունիզմը ամբողջ մարդկության պայծառ ապագան է, *ՍՄԿՊ ծրագրից*։

Վ. Վ. ԳՐԻՇԻՆ— Կոմունիզմի կառուցումը միլիոնավոր աշխատավորների կենդանի ստեղծագործությունն է, *զեկուցում կոմունիստական աշխատանքի շարժման առաջավորների համամիութենական խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 27-ի համարում*։

Կոմունիստական աշխատանքի շարժման առաջավորների համամիութենական խորհրդակցության մասնակիցների դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թ. ապրիլի 28-ի համարում*։

## 2. Բոլոր ուժերը յոթնամյակի հինգերորդ տարվա պլանների կատարման և գերակատարման համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Երկրի տնտեսական հզորության բարձրացման համար մղվող պայքարը։ Յոթնամյա պլանը կարևոր էտապ է կոմունիզմի նյութատեխնիկա-

կան բազայի ստեղծման գործում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961:*

Ժամկետից շուտ կատարել յոթնամյակի հինգերորդ տարվա առաջադրանքները, *ՀԿՊ Կենտկոմի նախագահության որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 20-ի համարում:*

Բոլոր ուժերը գործի դնել կապիտալ շինարարության պլանի հաջող կատարման համար, *ՀԿՊ Կենտկոմի նախագահության որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 3-ի համարում:*

ՍՍՌՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը ՍՍՌՄ արդյունաբերության 1963 թվականի առաջին եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 20-ի համարում:*

Կոմունիստական աշխատանքի շարժման առաջավորների համամիութենական խորհրդակցության մասնակիցների դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 28-ի համարում:*

## 3. Արտադրության բարձր կուլտուրան բազմապատկում է աշխատանքի արդյունքները

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ավելի լրիվ օգտագործել սոցիալիստական էկոնոմիկայի ռեզերվները, վերացնել



շայլությունն ու անտնտեսվարությունը: Ամեն կերպ
բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը:
*ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկու-*
*ցումից, էջ 78—87, Հայպետհրատ, 1961:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Տեխնիկական քաղաքականու-
թյան ղեկավարման կենտրոնացումը և տնտեսական
շինարարության կառավարման կատարելագործումը,
*ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումին տված զե-*
*կուցումից, Հայպետհրատ, 1962:*

Ռացիոնալ օգտագործել մեքենա-տրակտորային պարկը, *հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1962 թվականի 12-րդ համարում:*

Բարելավել բանվորական ժամանակի օգտագործումը, *հոդված, տպագրված ՀԿՊ Կենտկոմի «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 3-րդ համարում:*

Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու լենինյան սկզբունքները, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 16-ի համարում:*

## 4. Պայքարենք բարձր բերքի համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ամրապնդել և բազմապատկել
գյուղատնտեսության զարգացման հաջողությունները:
Ավելի լրիվ բավարարել բնակչության պահանջմունք-
ները գյուղատնտեսական մթերքների ապարեղում,

*ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 104—112, Հայպետհրատ, 1961։*

Համաժողովրդական մրցություն ծավալենք 1963 թվականին հացահատիկի և անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու համար, *Կրասնոդարի երկրամասի Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության կոլտնտեսականների, սովխոզների բանվորների և գյուղատնտեսության մասնագետների նամակը երկրի գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 31-ի համարում։*

Մեխանիզատորների պատվի գործը, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 16-ի առաջնորդող հոդվածը։*

Ժամանակի կորուստը բերքի կորուստ է, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի մայիսի 12-ի առաջնորդող հոդվածը։*

## 5. Պարտիական-պետական վերահսկողությունը՝ լենինյան, մասսայական, մարտական վերահսկողություն է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչպես վերակազմենք Բանգյուղտեսչությունը (Առաջարկ պարտիայի XII համագումարին), *Երկեր, հատոր 33, էջ 572—578, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացումը և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբեր-*



*յան պլենումում, առանձին գրքույկ, Հայպետհրատ, 1963։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած ՌՍՖՍՌ-ի արդյունաբերության և շինարարության աշխատողների խորհրդակցությունում 1963 թվականի ապրիլի 24-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 26 և 27-ի համարներում։*

Պարտիական և պետական վերահսկողության լենինյան սկզբունքները, *հոդված, տպագրված ՀԿՊ Կենտկոմի «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 3-րդ համարում։*

Վերահսկողության ուժը նրա մասսայականության մեջ է, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի մայիսի 9-ի առաջնորդողը։*

## 6. Երեխաների պաշտպանության միջազգային օրը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ բանվորուհիների համառուսաստանյան առաջին համագումարում 1918 թ. նոյեմբերի 19-ին, *Երկեր, հատոր 28, էջ 218—221, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կին բանվորուհիներին, *Երկեր, հատոր 30, էջ 472—473, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *Հայպետհրատ, 1961։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների

Միության Կոնստիտուցիա (Հիմնական օրենք), *հոդված 122 և 123, Հայպետհրատ, 1963։*

ՍՄԿՊ Կենտկոմի դիմումը կանանց միջազգային օրվա՝ Մարտի 8-ի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 8-ի համարում։*

## 7. Խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը գործողության մեջ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Սոցիալիզմի պատմական հաղթանակները, *ՍՄԿՊ ծրագրի մասին պարտիայի XXII համագումարին տված զեկուցումից, էջ 5—24, Հայպետհրատ, 1961։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Հասնել միջազգային պրոբլեմների խաղաղ լուծման, մերկացնել պատերազմի հրձիգների մեքենայությունները ու մանևրները։ Բարելավել պետությունների փոխհարաբերությունները, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 46—62, Հայպետհրատ, 1963։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Ճառ Մոսկվա քաղաքի Կալինինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, 1963 թվականի փետրվարի 27-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 28-ի համարում։*



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ա. ՇԱՀԻՆՅԱՆ.— Ուրվագծեր Անդրկովկասյան ժողովուրդների կուլտուրական համագործակցության պատմության— *Հայպետհրատ*, 1963, 390 էջ, գինը 63 կոպ.։

*Հեղինակը Անդրկովկասյան երեք եղբայրական ժողովուրդների կուլտուրական կապերի ուսումնասիրությանն է նվիրել իր այս գիրքը։ Մանրամասն ուսումնասիրելով Հայկական ՍՍՌ գիտությունների ակադեմիայում եղած, ինչպես նաև ադրբեջանցի ու վրացի բարեկամների կողմից այդ հարցի կապակցությամբ հրապարակված աշխատությունները, հեղինակը համառոտակիորեն շարադրել է Անդրկովկասյան երեք ժողովուրդների կուլտուրական փոխադարձ կապերի ու համագործակցության մասին։ Գրքում բերված են բազմաթիվ փաստեր գրականության, թատրոնի, երաժշտության, արվեստի մյուս ասպարեզներում հայերի, վրացիների ու ադրբեջանցիների ունեցած բարեկամական կապերի մասին։*

Հայաստանի գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության առաջավորները— *Մետալուրգիական արդյունաբերության բանվորների արհմիության ռեսպուբլիկական կոմիտեի և գունավոր մե-*

տալուրգիայի գիտա-տեխնիկական ընկերության Կովկասյան վարչության հրատարակչություն, 1963, 107 էջ։

Այս գրքում հետաքրքիր օրինակներով շարադրված են Հայաստանի լավագույն լեռնագործների ու մետալուրգների, հարստացուցիչ ֆաբրիկաներում աշխատողների լավագույն փորձի մասին։

Գրքում պատմվում է կոմունիստաբար աշխատելու և ապրելու համար ծավալված մեծ շարժման առաջավորների՝ Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի արտացոլիչ վառարանի ավագ ձուլող, սոցիալիստական աշխատանքի հերոս Արշակ Ղազարյանի, Կանազի էլեկտրոլիզի բրիգադավար ՀՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ Սարգիս Ավագյանի, Քաջարանի լեռնային ցեխի խոր հորատման հաստոցավար, ՍՍՌՄ Գերագույն սովետի դեպուտատ Էդիկ Համբարձումյանի և ուրիշների մասին։

Ա. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ— Հայկական ՍՍՌ արդյունաբերությունը և նրա զարգացման խնդիրները։ Հայկական ՍՍՌ ԳԱ-ի հրատարակչություն, 1963, 115 էջ, գինը 30 կոպեկ։

Նախահեղափոխական Հայաստանը արդյունաբերությունից համարյա զուրկ երկիր էր։ Եղած արդյունաբերության մի քանի ճյուղերն էլ կրում էին տնայնագործական բնույթ։ Բայց փոխվել է պատկերը 1920 թվականից հետո։ Հեղինակը պատմում է Հայաստանի արդյունաբերության մեջ տեղի ունեցած այդ հսկայական փոփոխությունների մասին։ Գրքույկում խոս-



վում է նաև արդյունաբերության հետագա զարգացման, հիմնական ուղիների՝ հումքային, էներգետիկ և աշխատանքային ռեսուրսների մասին։ Միաժամանակ շոշափվում է նաև արդյունաբերության տեղաբաշխման, մասնագիտացման և կոոպերացման հարցերը, ինչպես նաև ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման հեռանկարներն ու խնդիրները առաջիկա 20 տարում։

Հ. ԵԳԱՆՅԱՆ— Ագրարային հարաբերությունները Իրանում 19-րդ դարի առաջին կեսին, Հայկական ՍՍՌ ԳԱ-ի հրատարակչություն, 1963, 126 էջ, գինը 73 կոպեկ։

19-րդ դարի առաջին կեսի Իրանի գյուղացիության սոցիալ-տնտեսական դրությանն է նվիրված այս աշխատությունը։ Հեղինակը վերլուծում է 19-րդ դարի առաջին կեսին Իրանում տիրող ֆեոդալական կարգերը, տեղեկություններ տալիս հողատիրության և հողօգտագործման ձևերի, հարկային սիստեմի, հողային ռենտայի, գյուղացիության շահագործման եղանակների մասին և այլն։

Գյուղատնտեսական մեքենաների տեղեկագիրք— Հայպետհրատ, 1963, 217 էջ, գինը 45 կոպ.։

Տեղեկագիրքը ձեռնարկ է կոլտնտեսային և սովխոզային մասնագետների համար։ Տեղեկագրքում տրված է գյուղատնտեսության մեջ օգտագործվող բազմաթիվ և բազմապիսի մեքենաների կառուցվածքի նկարագիրը և տեխնիկական համառոտ բնութագիրը։

---

# ԲԱՌԱՐԱՆ

Ընթերցողներին օգնելու նպատակով ստորև տալիս ենք մի շարք բառերի բացատրություններ, որոնք հաճախակի հանդիպում են մամուլում, գրքերում և առանձին հետաքրքրություն են ներկայացնում։

ՀԻԵՐՈԳԼԻՖ— (գաղափարագիր, նշանագիր)։ «Հիերոգլիֆ» խոսքը ծագել է հունական «հիերոս»— սրբազան և «գլիֆե» քանդակում խոսքերից։ Հին հունական գրողների մոտ կա մի այսպիսի արտահայտություն՝ «տա հիերոգլիֆկա գրամատա», այսինքն՝ «սրբազան քարի վրա քանդակած գրեր»։ Այդպես անվանեցին նրանք հին եգիպտական գրերը։ Դրանք խիստ դժվար ընթեռնելի գրեր էին, որոնց ընթերցման (վերծանման) գաղտնիքը մոռացության էր մատնվել միջին դարերում և միայն մեծ դժվարությամբ, սրանից ավելի քան մեկ դար առաջ վերծանվել է եվրոպական առանձին գիտնականների կողմից։ Հիերոգլիֆներ սկսեցին անվանել նմանապես չինական և ուրիշ այլ նշանագրեր։

Հիերոգլիֆները իրենց խրթինությամբ լինում են տարբեր տեսակի. մի մասը պատկերացնում են կոնկրետ առարկաներ, մյուսները՝ ամբողջ հասկացողություններ, երրորդները հանդիսանում են հնչյունային գրեր և նշանակում են որոշակի վանկեր կամ



նույնիսկ առանձին հնչյուններ։ Այդ կապակցությամբ էլ հիերոգլիֆների սիստեմում նշանագրերի քանակը շատ մեծ է։ Չինական գրության մեջ, օրինակ, այն 40 հազարից ավելի է, սակայն ժամանակակից տեքստերում օգտագործվում է շատ քիչ, մոտ հինգ հազար։

ԱՐԽԵՈԼՈԳԻԱ— (հնագիտություն), գիտություն, որն ուսումնասիրում է մարդկության պատմական անցյալը նյութական հուշարձանների, աշխատանքի գործիքների, զենքի, տնային արդ ու զարդի, բնակարանների, արհեստանոցների և հին կուլտուրայի ուրիշ այլ մնացորդների հիման վրա։ Այդ հուշարձանների մեծ մասը ձեռք է բերվում բնակավայրերի և գերեզմանների պեղումների միջոցով։ Արխեոլոգիա բառը հունարեն է, որ նշանակում է «գիտություն հնության մասին» («արխաոս»— հին)։

ՖՈՒՆԿՑԻԱ— Այս բառը ունի մի քանի նշանակություն։ Սովորաբար կյանքում այն նշանակում է մի որոշակի գործունեություն, պարտականություն և այլն։ Օրինակ, կատարել նախագահի ֆունկցիան-նշանակում է կատարել նախագահի պարտականությունը։ Կենսաբանության և բժշկության մեջ ֆունկցիա է կոչվում օրգանիզմի կամ նրա առանձին օրգանների գործունեությունը, օրինակ, սրտի ֆունկցիա՝ արյան մղում, ստամոքսի ֆունկցիա՝ սննդի մարսում և այլն։

Ֆունկցիա բառը ծագել է լատինական «ֆունկտիո» բառից, որը նշանակում է ուղղություն, գործունեություն։

*ՄԻՖՈԼՈԳԻԱ*— *(դիցաբանություն, առասպելաբանություն), բանավոր ստեղծագործության հատուկ ձև է յուրաքանչյուր ժողովրդի կյանքի զարգացման վաղ շրջանում։ «Միֆոլոգիա»— ծագել է հունական «միֆոս» բառից, որ նշանակում է ավանդություն, պատմություն և «լոգոս» բառից, որ նշանակում է խոսք, պատմվածք։ Առասպելը դա մարդկանց առաջին փորձն է բացատրելու այս կամ այն երևույթը։*

*Միֆոլոգիան սկիզբ է առել հնագույն ժամանակներում։ Իրենց բովանդակությամբ առասպելները խիստ տարբեր են լինում։ Գրեթե բոլոր ժողովուրդներն էլ ունեն իրենց առասպելները աշխարհի առաջացման, երկնային մարմինների, մարդու ծագման մասին, համաշխարհային ջրհեղեղի, զանազան տարերքների մասին։*



## СОДЕРЖАНИЕ

Стр.



Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

**Адрес редакции** — ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

ԻՆԴԵՔՍ՝ 77704

Отдел идеологической работы
ЦК КП Армении

# АГИТАТОРИ БЛОКНОТ

## № 10

1963

ՎՖ 10082 Պատվեր 435 Տիրաժ 8402

Հանձնված է արտադրության 16/V 1963 թ.
Ստորագրված է տպագրության 21/V 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.